Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—53—78*


---

# ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ԲԱՇԽՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

*Հետևողականորեն կենսագործելով գյուղատնտեսության զարգացման մասին բոլշևիկների պարտիայի և Սովետական Կառավարության որոշումները, ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունն անցած գյուղատնտեսական տարում աչքի ընկնող հաջողությունների հասավ բերքատվության բարձրացման և հանրային մթերատու անասնաբուծության զարգացման բնագավառներում։*

*Անցած գյուղատնտեսական տարվա արդյունքների ամփոփումը պարզորոշ կերպով ցույց տվեց, որ սովետական ագրոնոմիական գիտությունը կյանքում կիրառելու և գյուղատնտեսության առաջավորների հարուստ փորձը արմատավորելու շնորհիվ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1951 թվականին ընթացել են վերելքի ուղիով և գյուղատնտեսական կուլտուրաների ավելի շատ բերք են ստացել, քան 1950 թվականին։*

կոլտնտեսություններում մեծ չափով ավելացել են անասնապահական մթերքներն ու դրամական եկամուտները։

Հարազատ Սովետական պետության հանդեպ ունեցած պարտավորությունների առաջին հերթին կատարելուց հետո, կոլտնտեսությունները սերմացու են առանձնացրել 1952 թվականի գարնանացանի, ինչպես նաև փոխանցիկ սերմացու՝ աշնանացանի համար։ Կոլտնտեսությունները միաժամանակ առանձնացրել են կերի, ապահովագրական, հանրային ու այլ ֆոնդեր։ Համապատասխան քանակությամբ հատկացումներ են կատարել անբաժանելի դրամագլխին։

Այս բոլորից հետո, գյուղատնտեսական արտելի ստալինյան օրինակելի Կանոնադրության լրիվ համապատասխան, կոլտնտեսությունները սկսել են եկամուտների բաշխումը, որը կարևոր իրադարձություն է կոլտնտեսային գյուղում։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսականները ամբողջ տարին ազնվորեն աշխատելով կոլտնտեսային արտադրության մեջ, իրենց վաստակած աշխօրերի դիմաց ստանում են մեծ եկամուտ և ունևոր ու կուլտուրական կյանք վարում։

Գյուղական ագիտատորների խնդիրն է՝



ագիտացիոն պարապմունքների ժամանակ վեր հանել կոլտնտեսային արտադրության առաջավորների աշխատանքի օրինակները կոնկրետ թվերով, փաստերով ցուցադրել նրանց ստացած առատ եկամուտները և այդ հիման վրա ցույց տալ, թե ինչպես կոլտնտեսություններում բարեխիղճ, ազնիվ ու նվիրված աշխատանքի դեպքում միշտ էլ կարելի է մեծ եկամուտ ստանալ։

Եկամուտների բաշխման ժամանակ կոլտնտեսականների մեջ ագիտացիոն աշխատանքի ուսանելի օրինակ են ցույց տալիս Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի «Սպարտակ» կոլտնտեսության ագիտատորները։ Այդ կոլտնտեսությունում Հայրիկ Կարեյանը իր ընտանիքի անդամների հետ միասին վաստակել էր 1500 աշխօր. դրա դիմաց Հ. Կարեյանի ընտանիքը կոլտնտեսությունից ստացավ 4500 կիլոգրամ հացահատիկ, 900 կիլոգրամ կարտոֆիլ, 90 կիլոգրամ պանիր ու յուղ, 750 կիլոգրամ բանջարեղեն, 6000 ռուբլի դրամ և այլն։ Մեծ եկամուտ ստացան նաև Սամսոն Մարգոյանը, Հակոբ Ջրաղացպանյանը և շատ շատերը։ Եկամուտների բաշխման երկրորդ օրը ագիտատորներ Ե. Իսրայելյանը, Ա. Գևորգյանը և մյուսները բրիգադներում ու ֆերմաներում

անցկացրած իրենց վրույցների ընթացքում այդ կոլտնտեսականների օրինակով ցույց տվին կոլտնտեսային կարգերի առավելությունները, թե ինչպես մեքենայացվել է գյուղատնտեսությունը, աշխատանքը դարձել է հեշտ, պատվի ու փառքի գործ, որ աղնիվ աշխատանքով ամեն մի կոլտնտեսական դառնում է ունևոր ու երջանիկ։ Ջաhամանափակվելով դրանով, ագիտատորները կոլտնտեսության եկամուտների բաշխման հարցերը վարպետորեն կապեցին կոլտնտեսության առջև ծառացած ընթացիկ տարվա խնդիրների հետ, կազմակերպեցին սոցիալիստական մրցություն՝ 1952 թվականին է՛լ ավելի բարձր բերք ստանալու, հանրային անասունների գլխաքանակը ավելացնելու և մթերատվությունը բարձրացնելու համար։ Կատարելով անհատական և կոլեկտիվ պայմանագրերով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, այժմ կոլտնտեսությունում եռանդուն աշխատանք է տարվում գարնանացանին հաջող նախապատրաստվելու և անասունների ձմեռը կամպանիան անկորուստ անցկացնելու համար։

Ագիտատորները կոլտնտեսային եկամուտների բաշխման ժամանակ լայնորեն պետք է մասսայականացնեն պարտիայի ու Կառա-



վարության որոշումները, մասնավորապես կոլտնտեսություններում եկամուտների բաշխման կարգի մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1948 թվականի ապրիլի 19-ի հայտնի որոշումը, ըստ որի կոլտնտեսություններում եկամուտների բաշխման ժամանակ համապատասխան չափով պետք է բարձրացնել բերքատվության պլանները գերակատարած բրիգադների ու օղակների վաստակած աշխօրերի քանակը և ընդհակառակը, իջեցնել այն բրիգադների ու օղակների աշխօրերի քանակը, որոնք թերակատարել են բերքատվության սահմանված պլանները։

Եկամուտների բաշխումը կոլտնտեսություններում պետք է ընթանա ձեռք բերված նվաճումներն ամրապնդելու, գյուղատնտեսական մթերքների և հումքի արտադրությունն ավելացնելու նշանաբանով։ Ճիշտ բաշխել եկամուտները, նշանակում է հաստատուն նախադրյալներ ստեղծել սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի համար։

Կոլտնտեսություններում զգալի թիվ են կազմում բերքատվության պլանները գերակատարած բրիգադներն ու օղակները, որոնց աշխօրերը բարձրացվում է։ Զգալի թիվ

են կազմում նաև անասնաբուծության մթե-
րատվության բարձրացման պլանները գերա-
կատարած ֆերմաների վարիչները և անաս-
նապահները, որոնք ստանում են լրացուցիչ
վարձատրություն։ Ագիտատորները պետք է
խոր և բազմակողմանի կերպով ուսումնա-
սիրեն այդ առաջավոր բրիգադների, օղակնե-
րի և ֆերմաների աշխատանքի հարուստ
փորձը և այն պարզ ու հասկանալի լեզվով
մասսայականացնեն, ստեղծելով շահագրգռ-
վածություն կոլտնտեսականների մոտ՝ նո-
րանոր հաջողություններ ձեռք բերելու հա-
մար։ Միաժամանակ պետք է հասնել այն
բանին, որ ձգտում առաջանա ետ մնացող-
ների մոտ՝ առաջավորներին հասնելու հա-
մար։

Պարտիան ու Կառավարությունը, հոգ տա-
նելով կոլտնտեսությունների հետագա ամ-
րապնդման ու զարգացման մասին, պահան-
ջում են, որ հետղհետե ավելացվեն կոլտնտե-
սությունների դրամական եկամուտները։ Ա-
գիտատորները պետք է կոլտնտեսականներին
բացատրեն, որ այդ հոգատարության նպա-
տակն է տարեցտարի ավելացնել կոլտնտե-
սությունների անբաժանելի դրամական ֆոն-
դը, որի շնորհիվ հնարավոր կլինի ծավալել
արտադրական շենքերի շինարարությունը,



լրացնել ու ավելացնել արտադրական մի-
ջոցները և դրանով իսկ կրկնապատկել եկա-
մուտը և ավելի շատ դրամ բաշխել կոլ-
տնտեսականների աշխօրերի դիմաց։

Կոլտնտեսությունների շահերը պահան-
ջում են, որ հացահատիկային կուլտուրանե-
րի մշակության շրջաններում կոլտնտեսու-
թյունների դրամական եկամուտների 15, իսկ
տեխնիկական կուլտուրաների մշակության
և անասնապահական շրջաններում՝ 20 տո-
կոսից ոչ պակաս մասը հատկացվի անբա-
ժանելի ֆոնդերին։

Հաշվի առնելով դրամական եկամուտ-
ների աճի մեծ նշանակությունը կոլտնտե-
սությունների հետագա ամրապնդման գոր-
ծում, ռեսպուբլիկայի բոլոր շրջանների
կոլտնտեսությունները համապատասխան
հատկացումներ են կատարում կապիտալ շի-
նարարության ֆոնդերին ու դրանով իսկ
ամրապնդում հանրային տնտեսության հիմ-
քերը։ Ագիտատորները պետք է լուրջ ուշադ-
րություն դարձնեն այս խնդրի վրա, մաս-
սայական-բացատրական լայն աշխատանք
կատարեն կոլտնտեսականների շրջանում,
որպեսզի նրանք իրենց ընդհանուր ժողովնե-
րում, ինչպես այդ պահանջում է արտելի Կա-
նոնադրությունը, գյուղատնտեսական մթերք-

ների մի մասն առանձնացնեն վաճառելու, դրամական միջոցներն ավելացնելու համար։

Կոլտնտեսություններում եկամուտների բաշխման ժամանակամիջոցում պետք է օգտագործել ագիտացիոն աշխատանքի բազմատիպի ձևերը և բոլշևիկյան ճշմարտացի խոսքի միջոցով բոլոր կոլտնտեսականների և գյուղատնտեսության մեխանիզատորների ուժերը մոբիլիզացնել՝ 1951 թվականին ձեռք բերված նվաճումներն ամրապնդելու և 1952 թվականին նորանոր հաջողությունների հասնելու համար։

Կոլտնտեսություններում եկամուտների բաշխումը քաղաքական և տնտեսական մեծ նշանակություն ունեցող գործ է, որի ընթացքում կոլտնտեսականների մեջ ագիտացիոն աշխատանքը պետք է ծավալվի նոր թափով, նոր եռանդով։ Դա իրական օգնություն կհանդիսանա կոլտնտեսություններին՝ եկամուտները ճիշտ կերպով բաշխելու և հանրային տնտեսությունն էլ ավելի ամրապնդելու համար։

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈՏԱՅՔԻ ՄՏ ԿԱՅԱՆԻ ՄԵԽԱՆԻԶԱՏՈՐՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Կոտայքի մեքենա-տրակտորային կայանի կոլեկտիվը հաջողությամբ ավարտելով գյուղատնտեսական տարին, ձեռնամուխ եղավ գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների աշնան-ձմեռային վերանորոգումների գործին։ Մեքենա-տրակտորային կայանի մեխանիզատորները ընդօրինակելով մեր մեծ Միության առաջավոր կոլեկտիվներին, ռեսպուբլիկայում առաջիններից մեկը սկսեցին աշխատել հանգուցային վերանորոգումների առաջավոր մեթոդով։ Կայանում պայքար ծավալվեց 1952 թվականի բարձր բերքի համար։

Գյուղատնտեսական մեքենաների և գործիքների աշնան-ձմեռային վերանորոգումների աշխատանքներում մեխանիզատորները ձեռք բերեցին խրախուսելի ցուցանիշներ։ Աշխատանքային այդ հաջողությունների մեջ իրենց լուրջ բաժինն ունեն կայանի պարտիական կազմակերպության ագիտատորները։

Մեզ մոտ, մեխանիզատորների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքների հաջողությունը ամենից առաջ բացատրվում է այն բանով, որ կայանի պարտիական կազմակերպությունը ագիտատորների կազմը ընտրելուց և ճիշտ տեղաբաշխելուց հետո, ամենօրյա օգնություն ու ղեկավարություն է ցույց տալիս նրանց։ Պարտիական կազմակերպության որոշման համապատասխան, ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Պ. Առաքելյանը շաբաթական մեկ անգամ կազմակերպում է սեմինար պարապմունք։ Սեմինար պարապմունքներում ագիտատորները լսում են զեկուցումներ, քննարկում են առաջիկա պարապմունքների թեմաները, ստանում են իրենց, կամ ունկնդիրներին հետաքրքրող հարցերի պատասխանները։ Սեմինար պարապմունքների ժամանակ կատարվում է ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձի փոխանակում, առաջավոր ագիտատորների աշխատանքի մեթոդների քննարկում և մասսայականացում։

Պարտիական կազմակերպության ցուցումների հիման վրա, ագիտատորները, աշնանձմեռային վերանորոգումների աշխատանքների սկզբում, կայանի ողջ կոլեկտիվին ընդգրկեցին կոլեկտիվ և անհատական սոցիա-



լիստական մրցության մեջ։ Այժմ պարապմունքների ժամին հաճախակի անդրադառնալով մրցության հարցերին, նրանք մասսայականացնում են առաջավորների աշխատանքի ցուցանիշները, փորձը, կազմակերպում կոլեկտիվ օգնություն հետ մնացողներին։

Պարտիական կազմակերպության օգնությունը ագիտատորներին կատարվում է նաև ժողովների միջոցով։ Վերջերս ժողովում լսվեց ագիտատոր Պ. Ասատրյանի ինֆորմացիան իր աշխատանքների մասին։ Ժողովում ծավալված քննադատությունից հետո ընկ. Ասատրյանը բարելավեց մեխանիզատորների շրջանում տարվող ագիտացիոն աշխատանքը, որի շնորհիվ բրիգադում վերացան անորակ վերանորոգումների դեպքերը։

Պարտիական կազմակերպության ամենօրյա օգնության և ղեկավարության շնորհիվ, մեքենա-տրակտորային կայանի ագիտատորները լավ են կատարում իրենց պատվավոր պարտականությունը։

Վերանորոգման արհեստանոցում մեխանիզատորների հետ հաճախ զրույցներ է անցկացնում տրակտորային պարկի ինժեներ ընկ. Պ. Միլիտոսյանը։ Ագիտատոր ընկ. Մի-

լիտոսյանը լավ է նախապատրաստվում ա-
գիտացիոն պարապմունքին։ Որպես կանոն,
նա պարապմունքից առաջ կարդում է նա-
խատեսված զրույցին վերաբերող գրքեր,
հոդվածներ,իր մոտ կատարում անհրաժեշտ
նշումներ։ Բացի այդ, պարապմունքի օրը
նա իր ծոցատետրում գրանցում է մեխանի-
զատորների աշխատանքների որակական ու
քանակական ամենավերջին ցուցանիշները և
նոր միայն ներկայանում պարապմունքի։
Սկսելով պարապմունքը, ընկ. Միլիտոսյանը
ունկնդիրներին ծանոթացնում է մեր մեծ Հայ-
րենիքում ձեռք բերած աշխատանքային հա-
ջողությունների, միջազգային իրադարձու-
թյունների, Սովետական Միության կողմից
գլխավորվող խաղաղության և դեմոկրատիա-
յի լագերի ուժերի աճման փաստերի հետ։
Սովորաբար զրույցի սկզբում կանգ առնե-
լով ընդհանուր բնույթ կրող մեկ, կամ ան-
հրաժեշտության դեպքում ավելի հարցերի
վրա, ընկ. Միլիտոսյանը դրանք կապում է
մեքենա-տրակտորային կայանի առջև դրված
խնդիրների հետ ու խոսում այն մասին, թե
ունկնդիրներից ով ինչպես է աշխատում այդ
խնդիրները կենսագործելու համար։ Իր
խոսքը ավարտելուց հետո, ինժեներ ագիտա-
տորը մեխանիզատորների աշխատանքի ցու-



ցանիշները քննարկման է դնում։ Պարապ-
մունքի ժամին ելույթ ունեցող ունկնդիրները
շատ հաճախ լրացնում ու հարստացնում են
ագիտատորի զրույցը և նոր, հետաքրքիր
միջոցներ նշում աշխատանքները բարելա-
վելու համար։

Կոտայքի մեքենա-տրակտորային կայանի
պարտիական կազմակերպության լավագույն
ագիտատորների թվում է նաև գյուղգործիք-
ներ վերանորոգող բրիգադի բրիգադիր ընկ.
Ա. Նփրեմյանը։

Մոտիկից ծանոթ լինելով իր ունկնդիրների
աշխատանքային հարցերին, ագիտատոր
Նփրեմյանը ընդհանուր բնույթ կրող հարցե-
րի մասին զրույցը ավարտելուց հետո, ուն-
կընդիրներին ծանոթացնում է սոցիալիստա-
կան մրցության ընթացքին, թերությունները
ներկայացնում քննարկման։ Նա վերջերս
քննարկման դրեց կոմբայնները և կալսիչնե-
րը վերանորոգման հանձնելու կարգը որոշ
մեխանիզատորների կողմից խախտելու
հարցը։ Ագիտատորը ունկնդիրներին նախօ-
րոք հաղորդեց, որ այդ կարգը խախտելու
պատճառով ՄՏ կայանը դրամական վնաս
է կրել։ Պարապմունքի ժամին լսվեցին կարգը
խանգարող մեխանիզատորների պատճառա-
բանությունները, պարզվեց, որ նրանք օգնու-

թյան կարիք են զգում։ Հետագայում, պարապմունքին մասնակցող ընկերների օգնության շնորհիվ, դրությունը բարելավվեց։

Մեխանիզատորների համար սիստեմատիկորեն կազմակերպվող զրույցներից բացի, ագիտատորները ամեն շաբաթ լույս են ընծայում խլլիչուլկաներ, ուր լուսաբանում են վերանորոգումների ընթացքը, սոցիալիստական մրցության ցուցանիշները, ծավալում քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Բացի այդ բոլորից, ագիտատորները անհատական զրույցներ են ունենում մեխանիզատորների հետ։ Նրանց համար կարմիր անկյունում կազմակերպում են բարձրաձայն ընթերցանություններ, պատասխանում նրանց հետաքրքրող հարցերին, ընթերցելու համար ընտրում հետաքրքիր գրքեր, բաժանում թերթերի ու ամսագրերի։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի շնորհիվ Կոտայքի մեքենա-տրակտորային կայանի մեխանիզատորները կատարում ու գերակատարում են արտադրական նորմաները, օրավուր ծավալում պայքարը 1952 թվականի բարձր բերքի համար։

Ռ. ՄԻՆԱՍՅԱՆ
Կոտայքի ՄՏ կայանի դիրեկտորի
քաղգծով տեղակալ

---



# ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄ ԵՆՔ Օ. ԱԳԱՖՈՆՈՎԱՅԻ ԵՎ Ա. ԺԱՆԴԱՐՈՎԱՅԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Լյուբլինո քաղաքի Լ. Մ. Կագանովիչի անվան գործարանի ձուլող ցեխի բանվորուհիներ Օ. Ագաֆոնովան և Ա. Ժանդարովան արժեքավոր նախաձեռնություն հանդես բերին։ Նրանք իրենց աշխատամասում գործադրելով աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, հասան այն բանին, որ արտադրական բոլոր օպերացիաները շարունակաբար կատարեցին գերազանց որակով։ Իրենց փորձի հիման վրա նրանք առաջարկեցին սոցիալիստական մրցություն կազմակերպել յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելու համար։

Լյուբլինոյի նորարար բանվորուհիների նախաձեռնության արձագանքողներից առաջիններից էին Լենինականի շոգեքարշային դեպոյի կոլեկտիվում ուսումնասիրության ենթարկվեցին

նորարար բանվորուհիների աշխատանքի ձևերն ու մեթոդները, նրանց գործադրման մեր հնարավորությունները, սպասվելիք օգուտները և այլն։ Ուսումնասիրությունից պարզվեց, որ շոգեքարշերի մասերի մշակման և շոգեքարշերի վերանորոգման լյուբլինցիների օրինակով աշխատելու դեպքում, մենք կտանք միայն գերազանց որակի արտադրանք, կըտնտեսենք հումքը, կիջեցնենք ինքնարժեքը, կբարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը։

Շոգեքարշային դեպոյի կոլեկտիվում սկսվեց կոլեկտիվ և անհատական սոցիալիստական մրցությունը՝ յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելու համար։ Այդ մրցության մեջ առաջին հաջողությունը պատկանում է դեպոյի նախապատրաստական ցեխի կոլեկտիվին։ Ագաֆոնովայի և Ժանդարովայի աշխատանքի մեթոդների գործադրումից առաջ, մեզ մոտ, նախապատրաստական ցեխում հաճախակի էին դեպքերը, երբ շոգեքարշերի շարժաթևերը անփույթ աշխատանքի պատճառով հետ էին վերադարձվում և կրկնակի վերանորոգման ենթարկվում։ Այժմ նախապատրաստական ցեխի խառատների, նրանց թվում Ս. Մելիքսեթյանի և Ա. Սարգսյանի վերա-





նորոգած բոլոր շարժաթևերը, տեղադրող բրիգադի կողմից ընդունվում են որպես գերազանց որակի։ Ստախանովական խառատները յուրաքանչյուր արտադրական օպերացիա կատարելով գերազանց որակով, միաժամանակ նախատեսված 6 ժամի փոխարեն, յուրաքանչյուր շարժաթևի վերանորոգումը ավարտում են 4 ժամում։

Ագաֆոնովայի և Ժանդարովայի առաջարկությունը արտադրության մեջ հմտորեն են կիրառում նաև դեպոյի փականագործները։ Աշխատանքի այդ մեթոդով աշխատելու շնորհիվ անցած տարի փականագործների բրիգադը երկրին տվեց 48 հազար ռուբլու, իսկ այս տարվա հունվարի առաջին կեսին՝ 2 հազար ռուբլու նյութեղենի խնայողություն։ Կոլեկտիվում լայնորեն հայտնի են փականագործներ Կ. Մանուկյանի և Ս. Բասենցյանի անունները, որպես Ագաֆոնովայի և Ժանդարովայի հետևորդների։

Ծավալված սոցիալիստական մրցության մեջ նշանակալից հաջողություններ ունեն դեպոյի խողովակագործները։ Նրանք մրցության ընթացքում մեքենայացնելով արտադրական մի շարք պրոցեսներ, յուրաքանչյուր օպերացիայից առաջ կատարում են անհրա-

ժեշտ հաշվումներ, ճշտում պատրաստվող մասերի չափերը և դրա շնորհիվ էլ բոլոր օպերացիաները կատարում են գերազանց։ Եթե առաջներում խողովակագործների անբավարար աշխատանքի շնորհիվ կաթսայագործները հարկադրված էին լինում փորձարկումից հետո խողովակները լայնացնել կամ նեղացնել, ապա այժմ ծխատար խողովակները, առանձին կաղապարներ տեղադրվում են առյանց լրացուցիչ աշխատանքի, հեշտությամբ։ Խողովակագործների մեջ առանձնապես աչքի է ընկնում Հ. Պետրոսյանը, որը բոլոր արտադրական օպերացիաները վերջին երկու ամսում կատարել է միայն գերազանց որակի, թույլ չտալով կրկնակի վերանորոգման և ոչ մի դեպք։

Դեպոյում գերազանց որակի վերանորոգողների անուն են վաստակել Վ. Ջալիմցյանի ղեկավարած բարձրացման ցեխի աշխատողները։ Անցած տարում ձեռք բերած արտադրական հաջողությունների համար այս ցեխը արժանացավ մրցության մեջ հաղթողի պատվավոր կոչման և շահեց դեպոյի փոխանցիկ Կարմիր Դրոշը։ Այստեղ իսպառ լիկվիդացված է խոտան արտադրանքը։ Չի եղել կրկնակի նորոգման և ոչ մի դեպք։

Լյուբլինցիների արժեքավոր առաջարկու-



թյունը արտադրության մեջ կիրառելու հիանալի օրինակներ են տալիս անվանի վարպետ Ի. Պալյանի ղեկավարած բրիգադի վերանորոգողները։ Այս բրիգադը իր առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում է 250—260 տոկոսով։ Վարպետ Պալյանը հղկման աշխատանքը կատարում է այնքան հմտորեն, որ նրա վերանորոգած մասերը անվազույգերին են հագցվում առանց դժվարության։

Առաջավոր փորձի արմատավորման ուղությամբ նվաճումներն զգալի են նաև լըվացման ցեխում։ Հունվարի 14-ին այստեղ վերանորոգման բերվեցին 4 շոգեքարշ, որոնցից 3-ը արտապլանային։ Ցեխի վարիչ Ս. Հակոբյանը հանդես բերեց աշխատանքը կազմակերպելու հմտություն, որի շնորհիվ ցեխի էնտուզիաստները նույն օրը վերանորոգեցին և թողարկեցին 4 շոգեքարշ, մինչդեռ նրանցից միայն մեկի անիվների առանցքակալների վերանորոգումը պահանջում էր առնվազն երկու աշխատանքային օր։ Ցեխում շոգեքարշի կրկնակի վերանորոգման դեպք չի արձանագրվել։ Նախատեսված ժամանակը կրճատելու և վերանորոգումը բարձր որակով կատարելու շնորհիվ յուրաքանչյուր ամիս, նախատեսված 30-ի փոխա-

րեն վերանորոգվում է 40 և հաճախ ավելի շոգեքարշ։

Արտադրության առաջավորների փորձի արմատավորման և գյուտարարական առաջարկների կիրառման շնորհիվ 1951 թվականի տնտեսական տարվա պլանը մենք կատարեցինք ժամկետից շուտ, երկրին տվեցինք 150 հազար ռուբլու նյութեղենի խնայողություն, ինքնարժեքն իջեցրինք 2,4 տոկոսով, խնայեցինք մեկ միլիոն հարյուր հազար ռուբլի։

Լենինականի շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը ամրապնդելով 1951 թվականի ընթացքում ձեռք բերած նվաճումները, 1952 թվականի առաջին օրերից աշխատում է նոր նվաճումներ ձեռք բերելու՝ տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու, մեր Մեծ Հայրենիքին միայն գերազանց որակի արտադրանք տալու համար։

Զ. ԵԴԻԳԱՐՅԱՆ
Լենինականի շոգեքարշային դեպոյի պետ



# ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ԱՎՏՈԳՈՐԾԱՐԱՆԸ (ԳԱԶ)

1929 թվականին որոշում ընդունվեց Նիժնի-Նովգորոդում (այժմ Գորկի) կառուցել ավտոգործարան, որը պետք է տարեկան թողարկեր 100 հազար բեռնատար և մարդատար ավտոմեքենա։ 1930 թվականի մայիսի 2-ին, հանդիսավոր իրադրության մեջ, կատարվեց ստալինյան առաջին հնգամյակի գիգանտներից մեկի՝ Գորկի քաղաքի ավտոգործարանի հիմնադրումը։ Հիմքի առաջին քարը դրեց ՀամԿ(բ)Պ Նիժնի-Նովգորոդի Երկրկոմի քարտուղար ընկ. Ա. Ա. Ժդանովը։

Գործարանի շինարարական կոլեկտիվը ոգևորված մեր երկրում ավտոարդյունաբերության հեռանկարներով, մտավ սոցիալիստական մրցության մեջ, հանդես բերեց աշխատանքային հերոսություն։ Ապագա գիգանտ գործարանի մեխանիկական-հավաքման ցեխի 556 մետր երկարություն և 108 մետր լայնություն ունեցող երկաթե կմախքը հավաքվեց ու տեղադրվեց 43 օրում, իսկ ամ-

բողջ գործարանի կառուցումը տևեց ընդամենը մեկ և կես տարի։

Գործարանի կոլեկտիվի խնդրանքով նոր կառուցված ավտոգործարանը կոչվեց ընկեր Վ. Մ. Մոլոտովի անունով։

1932 թվականի հունվարի 2-ին «Պրավդա»-յում լույս տեսավ ընկեր Ստալինի ողջույնի հեռագիրը, ուղղված շինարարության բանվորներին, բանվորուհիներին, վարչաքաղաքական և տեխնիկական ղեկավարներին՝ ավտոգործարանի շինարարության ավարտման և գործարկման առթիվ։

Ոգեշնչված ընկեր Ստալինի ցուցումներով, ավտոգործարանի կոլեկտիվը սկսեց աշխատել կրկնապատկված եռանդով։ 1932 թվականի սկզբից գործարանն սկսեց թողարկել մեկ ու կես տոննանոց «ԳԱԶ—Ա. Ա.» տիպի բեռնատար և «ԳԱԶ—Ա» մարկայի մարդատար մեքենաներ։ 1933 թվականից սկսվեց կես տոննանոց «Պիկապ» մարկայի ավտոմեքենայի արտադրությունը։

Ստալինյան երկրորդ հնգամյակի տարիներին գործարանը լիովին վերազինվեց և ընդարձակվեց, ստեղծվեցին և տեխնիկական նոր բազայի հիման վրա արտադրվեցին նոր տիպի ավտոմեքենաներ։ 1936 թվականին գործարանն սկսեց թողարկել «Մ—1» մարկայի, հասարակ և հուսալի, 50



ձիու ուժ կարողություն ունեցող ավտոմեքենան, ինչպես նաև ինքնաթափ և սանիտարական մեքենաներ։

Հայրենական Մեծ պատերազմի առաջին իսկ օրից գործարանը վերակառուցվեց ռազմաճակատի կարիքները բավարարելու համար։ Ավտոմեքենաների թողարկման հետ միասին, գործարանը յուրացրեց մի շարք արտադրանքների թողարկումը և սկսեց կատարել Սովետական Բանակի պատվերները։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում, գործարանի կոլեկտիվի առաջ խնդիր դրվեց՝ ստեղծել և թողարկել նոր տիպի մարդատար և ապրանքատար ավտոմեքենաներ։ 1950 թվականի հունիսի 19-ին, Կրեմլում, ընկեր Ստալինը պարտիայի ու Կառավարության ղեկավար աշխատողների հետ դիտեց նոր տիպի ավտոմեքենաները։ Արտադրության համար հաստատվեց «ԳԱԶ—51», «ԳԱԶ—63» բեռնատար և «Պոբեդա» («ԳԱԶ—Մ 29») թեթև մարդատար ավտոմեքենաները։

Երկու և կես տոննանոց «ԳԱԶ—51» բեռնատար մեքենան ունի 6 գլանանոց մոտոր՝ 70 ձիու ուժ կարողությամբ։ «ԳԱԶ—63» ավտոմեքենան ունի մոտորից դեպի առջևի և հետևի սռնին տանող հաղորդակ։ Այս երկու մեքենաների փորձարկումը հաստատեց նր-

բողջ գործարանի կառուցումը տևեց ընդամենը մեկ և կես տարի։

Գործարանի կոլեկտիվի խնդրանքով նոր կառուցված ավտոգործարանը կոչվեց ընկեր Վ. Մ. Մոլոտովի անունով։

1932 թվականի հունվարի 2-ին «Պրավդա»-յում լույս տեսավ ընկեր Ստալինի ողջույնի հեռագիրը, ուղղված շինարարության բանվորներին, բանվորուհիներին, վարչաքաղաքական և տեխնիկական ղեկավարներին՝ ավտոգործարանի շինարարության ավարտման և գործարկման առթիվ։

Ոգեշնչված ընկեր Ստալինի ցուցումներով, ավտոգործարանի կոլեկտիվը սկսեց աշխատել կրկնապատկված եռանդով։ 1932 թվականի սկզբից գործարանն սկսեց թողարկել մեկ ու կես տոննանոց «ԳԱԶ—Ա. Ա.» տիպի բեռնատար և «ԳԱԶ—Ա» մարկայի մարդատար մեքենաներ։ 1933 թվականից սկսվեց կես տոննանոց «Պիկապ» մարկայի ավտոմեքենայի արտադրությունը։

Ստալինյան երկրորդ հնգամյակի տարիներին գործարանը լրիվին վերազինվեց և ընդարձակվեց, ստեղծվեցին և տեխնիկական նոր բազայի հիման վրա արտադրվեցին նոր տիպի ավտոմեքենաներ։ 1936 թվականին գործարանն սկսեց թողարկել «Մ—1» մարկայի, հասարակ և հուսալի, 50



ձիու ուժ կարողություն ունեցող ավտոմեքենան, ինչպես նաև ինքնաթափ և սանիտարական մեքենաներ։

Հայրենական Մեծ պատերազմի առաջին իսկ օրից գործարանը վերակառուցվեց ռազմաճակատի կարիքները բավարարելու համար։ Ավտոմեքենաների թողարկման հետ միասին, գործարանը յուրացրեց մի շարք արտադրանքների թողարկումը և սկսեց կատարել Սովետական Բանակի պատվերները։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում, գործարանի կոլեկտիվի առաջ խնդիր դրվեց՝ ստեղծել և թողարկել նոր տիպի մարդատար և ապրանքատար ավտոմեքենաներ։ 1950 թվականի հունիսի 19-ին, Կրեմլում, ընկեր Ստալինը պարտիայի ու Կառավարության ղեկավար աշխատողների հետ դիտեց նոր տիպի ավտոմեքենաները։ Արտադրության համար հաստատվեց «ԳԱԶ—51», «ԳԱԶ—63» բեռնատար և «Պոբեդա» («ԳԱԶ—Մ 29») թեթև մարդատար ավտոմեքենաները։

Երկու և կես տոննանոց «ԳԱԶ—51» բեռնատար մեքենան ունի 6 գլանանոց մոտոր՝ 70 ձիու ուժ կարողությամբ։ «ԳԱԶ—63» ավտոմեքենան ունի մոտորից դեպի առջևի և հետևի սռնին տանող հաղորդակ։ Այս երկու մեքենաների փորձարկումը հաստատեց նր-

րանց բարձր որակը, ամրությունը, շահագործման դյուրինությունը և այլն։

«Պոբեդա» թեթև մարդատար, 5 տեղանի, շքեղ կահավորված, ամբողջովին մետաղյա թափքով ավտոմեքենան ունի 50 ձիու ուժանոց և 4 գլանանի մոտոր, որով ավտոմեքենան կարողանում է մեկ ժամում զարգացնել մինչև 110 կիլոմետր արագություն։

1950 թվականին Վ. Մ. Մոլոտովի անվան ավտոգործարանը սկսեց արտադրել «ԶԻՄ» մարկայի միջին կարգի նոր մարդատար մեքենան։ «ԶԻՄ» մեքենայի առջևի մասում նըկարված է Նիժնի-Նովգորոդի հնագույն գերբը՝ եղջերու։ «ԶԻՄ» ավտոմեքենան ունի երեք շարք փափուկ և ընդարձակ բազմոցներ։ Մեքենան մեկ ժամում կարող է զարգացնել մինչև 125 կիլոմետր արագություն։ «ԶԻՄ»-ը վառելանյութը խնայող մեքենա է՝ կիլոմետրին 170—180 գրամ, դիմացկուն է, արագությունը զարգացնում է նաև լեռնային տեղանքում։ Իր հատկություններով «ԶԻՄ»-ը գերազանցում է արտասահմանյան նույն կարգի մեքենաներին։

«ԶԻՄ» մարկայի նոր ավտոմեքենան ստեղծելու համար գործարանի մի խումբ աշխատողներ, աշխատանքի ղեկավար Ն. Ի. Ստրոսկինի հետ միասին 1951 թվականին արժանացան Ստալինյան մրցանակի։



Վ. Մ. Մոլոտովի անվան ավտոգործարանը մեքենաշինական արդյունաբերության ստախանովյան շարժման հայրենիքն է։ Այստեղ 1935 թվականին դարբին Ալեքսանդր Բուսիգինը սահմանեց մեքենաշինական արդյունաբերության մեջ նոր ռեկորդ։

Ստախանովյան շարժումը ավելի մեծ թափ ու ծավալ ստացավ հետպատերազմյան հրնգամյակի տարիներին։ Գործարանի կոլեկտիվի եռանդուն աշխատանքի շնորհիվ վերջին մի քանի տարիների ընթացքում բեռնատար ավտոմեքենաների ինքնարժեքը իջել է 2 անգամ, թեթև մարդատար ավտոմեքենայի ինքնարժեքը՝ 3 անգամ։ Պատվով կատարելով 1951 թվականի պլանները, գործարանի կոլեկտիվը տվեց 25 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։

Գորկի քաղաքից ոչ հեռու, նախկին ամայի դաշտում, բարձրացել է մի նոր սոցիալիստական քաղաք։ Դա Գորկի քաղաքի ավտոգործարանային ռայոնն է։ Տասնյակ գեղեցիկ, վերամբարձ բնակելի շենքեր, ասֆալտապատ, ծառազարդ փողոցներ, մեծ թվով սպորտային հրապարակներ ու պուրակներ զարդարում են արդյունաբերական նոր, սոցիալիստական քաղաքը։ Քաղաքում գործում են 33 դպրոց, 40 մանկապարտեզ և մանկա-

մասր, 7 հիվանդանոց, 7 ակումբ, 10 գրադարան, տեխնիկայի տուն, մեծ թվով լիարատ խանութներ, կուլտուր-կենցաղային այլ և այլ հաստատություններ։

Գործարանի աշխատողների համար ընտեղծված են աշխատանքի, ուսման ու հանգստի անհրաժեշտ բոլոր պայմանները։ Հարյուրավոր բանվորներ առանց արտադրությունից կտրվելու ավարտել են գիշերային ինստիտուտները և տեխնիկումները։ Գործարանում աշխատում են Ստալինյան մրցանակի 41 լաուրեատ, տեխնիկական գիտությունների 6 թեկնածու, ավելի քան 30 ինժեներներ աշխատում են թեկնածուական մինիմումներ հանձնելու։

Պարտիայի ու Կառավարության առաջադրանքները օրինակելիորեն կատարելու համար, Վ. Մ. Մոլոտովի անվան ավտոգործարանը Հայրենական պատերազմի տարիներին պարգևատրվել է՝ Լենինի, «Կարմիր դրոշի» և «Հայրենական պատերազմի առաջին աստիճանի» շքանշաններով։

Գործարանի կոլեկտիվին է հանձնված մշտապես պահելու Պաշտպանության Պետական Կոմիտեի Դրոշը։

Ն. ՂԱԶԱՐՅԱՆ



# ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱ

Մեծ Բրիտանիա կամ Անգլիա է ընդունված կոչել եվրոպական այն պետությունը, որը պաշտոնապես անվանվում է «Մեծ Բրիտանիայի և Հյուսիսային Իռլանդիայի միացյալ Թագավորություն»։

Մեծ Բրիտանիան բոլոր մյուս երկրներից առաջ է թևակոխել զարգացման կապիտալիստական ուղին։ Կապիտալիզմն Անգլիայում մյուսներից առաջ է թևակոխել իր վերջին՝ իմպերիալիզմի ստադիան։ Կապիտալիստական Անգլիայի պատմությունը՝ դա աշխատավորների հրեշավոր շահագործման, բռնի կերպով ուրիշի տերիտորիաներ զավթելու, գաղութային երկրների ժողովուրդներին բնաջնջելու և ստրկացնելու պատմությունն է։

«Անգլիական կապիտալիզմը,— ասում է ընկեր Ստալինը,— միշտ եղել է, կա ու կմնա ժողովրդական ռևոլյուցիաների ամենադաժան խեղդիչը... Անգլիական բուրժուազիան միշտ կանգնած է եղել և շարունակում է կանգնած մնալ մարդկության ազատագրական շարժումը ջախջախողների առաջին շարքերում»։

Բազմաթիվ թալանչիական պատերազմների միջոցով Անգլիան զավթել է ընդարձակ տերիտորիաներ Ասիայում, Աֆրիկայում, Ավստրալիայում, Խաղաղ օվկիանոսում և այլն։ Անգլիան գաղութային խոշորագույն տերությունն է։ Անգլիային է պատկանում աշխարհի բոլոր գաղութային տիրապետությունների 59 տոկոսը, Մեծ Բրիտանիան իր տերիտորիայով 140 անգամ փոքր է բրիտանական կայսրությունից, իսկ բնակչությամբ՝ փոքր է 11 անգամ։

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո գաղութային երկրների ազգային-ազատագրական շարժման վերելքը ծանր հարվածներ հասցրեց Բրիտանական ճորտատիրական կայսրությանը։ Մալայայում, Բիրմայում, իսկ վերջերս Եգիպտոսում տեղի ունեցած իրադարձությունները ցույց են տալիս, որ գաղութային և կախյալ երկրների ժողովրդական մասսաները լի են անգլիական իմպերիալիզմի տիրապետության վերջ դնելու վճռականությամբ։

Ամերիկյան իմպերիալիզմն աշխատում է օգտվել անգլիական կապիտալիզմի թուլացումից։ Նա օգնում է բրիտանական իմպերիալիստներին գաղութային ժողովուրդների դեմ մղվող արյունոտ պայքարում և միևնույն ժամանակ իր ձեռքն է գցում բրիտանական տիրույթները։ Բրիտանական դոմինիոն Կանադան տնտեսական տեսակետից փաստորեն հանդի-



սանում է ԱՄՆ-ի մի մասը։ Կանադայում կատարված ամերիկյան կապիտալ ներդրումները 1949 թվականին հասան այդ երկրում կատարված բոլոր օտարերկրյա ներդրումների 74 տոկոսին։ 1949 թվականին ԱՄՆ-ի էքսպորտը՝ դեպի բրիտանական տիրույթները, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ավելացավ 4 անգամ և շարունակում է աճել։ 1948 թվականին դեպի Հնդկաստան կատարված ամերիկյան էքսպորտը 1938 թվականի համեմատությամբ ավելացավ 9 անգամ։ Անգլո-ամերիկյան հակասությունները առանձնապես սուր բնույթ ընդունեցին Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում նավթի համար մղվող պայքարում։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՐԿՐԻ ՄԱՍԻՆ

Միացյալ Թագավորության տերիտորիան կազմում է 244 հազար քառակուսի կիլոմետր, բնակչության թիվը՝ ավելի քան 50 միլիոն մարդ։

Միացյալ Թագավորությունը տեղավորված է Բրիտանական կղզիների վրա՝ Եվրոպայի հյուսիս-արևմտյան ափերին մոտիկ։ Պետության կազմի մեջ մտնում են՝ այդ կղզիներից խոշորագույնները՝ Մեծ Բրիտանիան, Իռլանդիա կղզու հյուսիս-արևելյան մասը և մոտ 5 հազար մանր կղզիներ։

Մեծ Բրիտանիա կղզու հարավային և միջին մասը, այսինքն՝ նրա տերրիտորիայի ավելի քան կեսը կազմում է Անգլիան՝ պետության այդ պատմական կորիզը։ Մեծ Բրիտանիա կղզու մյուս մասերն են Շոտլանդիան՝ հյուսիսում և Ուելսը՝ արևմուտքում։

Մեծ Բրիտանիան եվրոպական մայր ցամաքից բաժանում են Լա-Մանշ և Պա-դե-Կալե նեղուցները։ Վերջինիս լայնությունը, իր ամենանեղ մասում, կազմում է ընդամենը 32 կիլոմետր։

Ներկայումս ամերիկյան իմպերիալիզմը բրիտանական կղզիներն օգտագործում է՝ որպես իր ռազմական բազա։ Դավաճանելով իր ժողովրդի ազգային շահերին, Անգլիայի կառավարող շրջանները թույլ են տվել այն, որ երկրի որոշ շրջաններ փաստորեն օկուպացման են ենթարկվել ամերիկյան զինված ուժերի կողմից։ Դեռ 1951 թվականի սկզբներին ամերիկյան մոտ 30 հազար զորք կար Անգլիայի տերրիտորիայում։

Մեծ Բրիտանիայի չափազանց կտրտված ափերին կան շատ հարմար ծովախորշեր, նավահանգիստներ, ծովածոցեր։ Այդ հանգամանքը, ինչպես նաև Անգլիայի նպաստավոր աշխարհագրական դիրքը, որը գտնվում է ծովային ճանապարհների խաչմերուկի վրա, նպաստեց բրիտանական նավագնացության զարգացմանը, որը համաշխարհային երկրորդ պա-



տերազմից առաջ աշխարհում գրավում էր առաջին տեղը։

Անգլիան ամերիկյան քաղաքականությանը ենթարկելու և երկիրը մարշալականացնելու հետևանքով, բրիտանական նավագնացությունը այժմ կորցրել է իր առաջատար դերը կապիտալիստական աշխարհում։

Մեծ Բրիտանիայի մայրաքաղաքն է Լոնդոնը։ Նրա բնակչությունը, արվարձանների հետ միասին, կազմում է 8 միլիոն 656 հազար մարդ։ Լոնդոնը խոշորագույն արդյունաբերական կենտրոն է։ Նախապատերազմյան տվյալների համաձայն՝ երկրի բոլոր ձեռնարկությունների 22 տոկոսը գտնվում էր Լոնդոնում։ Անգլիայի առևտրական շրջանառության ավելի քան 1/3-ն անցնում է Լոնդոնի նավահանգստով։

Լոնդոնի հնագույն կենտրոնում՝ Սիտիում են գտնվում բանկերը, բորսաները, արդյունաբերական և առևտրական ընկերությունների գրասենյակները։ Սիտին անգլիական մոնոպոլիստական կապիտալի բերդն է, բրիտանական իմպերիալիզմի տնտեսական և քաղաքական իսկական կենտրոնը։

## ԵՐԿՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

Անցյալ դարի վերջին քառորդում Անգլիան կորցրեց իր նշանակությունը՝ որպես «աշխարհի արհեստանոց»։ Տնտեսական կարևորագույն ցուցանիշնե-

բով՝ ածխի հանույթով, արտադրողականությամբ և այլն, նրանից առաջ անցան երիտասարդ կապիտալիստական երկրները, մասնավորապես՝ ԱՄՆ-ը։

Ներկայումս անգլիական էկոնոմիկայի վիճակը բնութագրվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրման ֆոնի վրա տեղի ունեցող ճգնաժամային լուրջ պրոցեսներով։ Ճգնաժամից դուրս գալու ելքը անգլիական կառավարող շրջանները փնտրում են սպառազինության մրցավազքն ուժեղացնելու և համաշխարհային նոր պատերազմ ծավալելու մեջ, Անգլիայի ազգային շահերին դավաճանելու մեջ՝ հօգուտ ամերիկյան մոնոպոլիաների, աշխատավորների կենսամակարդակի վրա կատաղի հարձակում սկսելու մեջ։ Սակայն նմանօրինակ քաղաքականությունը էլ ավելի է խորացնում բրիտանական էկոնոմիկայի ճգնաժամը։ Արդյունաբերական արտադրությունը միակողմանի, ռազմական բնույթ է կրում,— քաղաքացիական արտադրության բոլոր ճյուղերը կրճատում են իրենց արտադրանքի թողարկումը՝ հօգուտ ռազմական ճյուղերի ընդլայնման։

Ընկեր Ստալինը 1951 թվականի փետրվարին, «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցում ասաց. «Պրեմյեր Էտտլին սեփական փորձով, ինչպես նաև ԱՄՆ-ի փորձով, պետք է իմանար, որ երկրի զինված ուժերի բազմապատկումը և սպառազինու-



թյունների մրցավազքը տանում են դեպի ռազմական արդյունաբերության ծավալումը, դեպի քաղաքացիական արդյունաբերության կրճատումը, դեպի քաղաքացիական մեծ կառուցումների կանգնեցումը, դեպի հարկերի բարձրացումը, դեպի մասսայական սպառման ապրանքների գների բարձրացումը»։

Բրիտանական էկոնոմիկայի մի շարք հիմնական ճյուղերի անկումը ցույց են տալիս հետևյալ տվյալները.

Քարածխի հանույթը *1913 թվականին կազմում էր 292 միլիոն տոննա, 1939 թվականին՝ 237 միլիոն տոննա, իսկ 1950 թվականին՝ արդեն միայն 204 միլիոն տոննա։ Ածխահորերի տեխնիկական սարքավորումը չափազանց ցածր է, ածխի հանույթն ու փոխադրումը գլխավորապես ձեռքով է կատարվում։ Խիստ ծանր է անգլիական ածխահատի աշխատանքը։ «Անգլիական ածխարդյունաբերության մեջ աշխատանքի պայմաններն անտանելի են»,— հարկադրված է խոստովանել նույնիսկ ռեակցիոն «Թայմս» թերթը։ 1947 և 1950 թվականների ձմեռը վառելիքի սոսկալի ճգնաժամ էր տիրում Անգլիայում, անջատվում էր էլեկտրականությունը, ձեռնարկությունները կանգ էին առնում։ 1952 թվականի ձմեռը նույնպես ոչ մի լավ բան չի խոստանում անգլիացիներին. մտցվել են ածխի*

քարտեր, ընդ որում բաց թողնվող ածխի քանակը կրկնակի պակաս է փաստական պահանջից։

Մայրահեղ ծանր վիճակում է գտնվում անգլիական արդյունաբերության մի կարևորագույն ճյուղը՝ տեքստիլ արդյունաբերությունը: 1950 թվականին բամբակե գործվածքների արտադրությունը, 1937 թվականի համեմատությամբ, կրճատվեց 43 տոկոսով։ Շինանյութերի արտադրությունը նույն ժամանակամիջոցում պակասեց 23 տոկոսով։

Սուր ճգնաժամ է ապրում Անգլիայի գյուղատնտեսությունը: Վերջին տարիներին կրճատվեց ցանքատարածությունը, զգալիորեն պակասեց կուլտուրաներից շատերի բերքատվությունը։

1950 թվականին Անգլիայում ոչխարների գլխաքանակը նախապատերազմյան գլխաքանակի համեմատությամբ պակասեց ավելի քան 30 տոկոսով։ Մեծ չափով պակասել է նաև խոզերի գլխաքանակը։ 1950 թվականին Անգլիայում 27 տոկոսով քիչ կարագ արտադրվեց, քան տարեկան միջին հաշվով արտադրվում էր պատերազմից առաջ։

Չափազանց քայքայվել են Անգլիայի ֆինանսները, որը ուղղակի հետևանք է երկրի կառավարող շրջանների ագրեսիվ, ավանտյուրիստական քաղաքականության։ Ենթադրվում է մոտակա երեք տարում ռազմական նպատակների համար ծախսել առնվազն 5 միլիարդ ֆունտ ստերլինգ։ Պաշտոնական,



բացահայտորեն նվազեցված, տվյալներով՝ անգլիական ֆունտ ստերլինգի—հիմնական դրամական միավորի,— գնողունակությունը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ ընկել է կրկնակի չափով։ Դրամական շրջանառության մեջ անընդհատ ավելանում է թղթադրամի քանակը։ 1950 թվականին շրջանառության մեջ 3 անգամ շատ թղթադրամ է եղել, քան 1938 թվականին։ 1951 թվականի սկզբներին Անգլիայի ոսկու և վալյուտային ռեզերվները՝ իրենց գնողունակությամբ կազմում էին նախապատերազմյան ռեզերվների միայն մեկ երրորդը։

Ներքին պարտքը աճել և 1938 թվականի 8 միլիարդ ստերլինգից 1950 թվականին հասել է 26 միլիարդի։ Ամերիկային ունեցած պարտքը (չհաշված «Մարշալլի պլանով» ստանձնած պարտավորությունները) կազմում է 7,5 միլիարդ դոլլար։

Ընթացիկ տարում աղետալի բնույթ ընդունեց Անգլիայի արտաքին առևտրի դեֆիցիտը՝ ներմուծման գերազանցումը արտահանմանը։ Ինը ամսում դեֆիցիտը անցավ 1.200 միլիոն ֆունտ ստերլինգից, որը երեք անգամ մեծ է 1950 թվականի դեֆիցիտից։

1937 թվականի համեմատությամբ բնակարանային շինարարության ծավալն Անգլիայում կրճատվել է մոտ երկու անգամ և անշեղորեն շարունակում է նվազել։ Եվ այդ այն ժամանակ, երբ բնակարանի կարիք ունեցող անգլիացիների թիվը ներկայումս,

քարտեր, ընդ որում բաց թողնվող ածխի քանակը կրկնակի պակաս է փաստական պահանջից:

Մայրահեղ ծանր վիճակում է գտնվում անգլիական արդյունաբերության մի կարևորագույն ճյուղը՝ տեքստիլ արդյունաբերությունը: 1950 թվականին բամբակե գործվածքների արտադրությունը, 1937 թվականի համեմատությամբ, կրճատվեց 43 տոկոսով: Շինանյութերի արտադրությունը նույն ժամանակամիջոցում պակասեց 23 տոկոսով:

Սուր ճգնաժամ է ապրում Անգլիայի գյուղատնտեսությունը: Վերջին տարիներին կրճատվեց ցանքատարածությունը, զգալիորեն պակասեց կուլտուրաներից շատերի բերքատվությունը:

1950 թվականին Անգլիայում ոչխարների գլխաքանակը նախապատերազմյան գլխաքանակի համեմատությամբ պակասեց ավելի քան 30 տոկոսով: Մեծ չափով պակասել է նաև խոզերի գլխաքանակը: 1950 թվականին Անգլիայում 27 տոկոսով քիչ կարագ արտադրվեց, քան տարեկան միջին հաշվով արտադրվում էր պատերազմից առաջ:

Չափազանց քայքայվել են Անգլիայի ֆինանսները, որը ուղղակի հետևանք է երկրի կառավարող շրջանների ագրեսիվ, ավանտյուրիստական քաղաքականության: Ենթադրվում է մոտակա երեք տարում ռազմական նպատակների համար ծախսել առնվազն 5 միլիարդ ֆունտ ստերլինգ: Պաշտոնական,



բացահայտորեն նվազեցված, տվյալներով՝ անգլիական ֆունտ ստերլինգի—հիմնական դրամական միավորի,— գնողունակությունը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ ընկել է կրկնակի չափով: Դրամական շրջանառության մեջ անընդհատ ավելանում է թղթադրամի քանակը: 1950 թվականին շրջանառության մեջ 3 անգամ շատ թղթադրամ է եղել, քան 1938 թվականին: 1951 թվականի սկզբներին Անգլիայի ոսկու և վալյուտային ռեզերվները՝ իրենց գնողունակությամբ կազմում էին նախապատերազմյան ռեզերվների միայն մեկ երրորդը:

Ներքին պարտքը աճել և 1938 թվականի 8 միլիարդ ստերլինգից 1950 թվականին հասել է 26 միլիարդի: Ամերիկային ունեցած պարտքը (չհաշված «Մարշալի պլանով» ստանձնած պարտավորությունները) կազմում է 7,5 միլիարդ դոլլար:

Ընթացիկ տարում աղետալի բնույթ ընդունեց Անգլիայի արտաքին առևտրի դեֆիցիտը՝ ներմուծման գերազանցումը արտահանմանը: Ինը ամսում դեֆիցիտը անցավ 1.200 միլիոն ֆունտ ստերլինգից, որը երեք անգամ մեծ է 1950 թվականի դեֆիցիտից:

1937 թվականի համեմատությամբ բնակարանային շինարարության ծավալն Անգլիայում կրճատվել է մոտ երկու անգամ և անշեղորեն շարունակում է նվազել: Եվ այդ այն ժամանակ, երբ բնակարանի կարիք ունեցող անգլիացիների թիվը ներկայումս,

բացահայտորեն նվաստացված տվյալներով, կազմում է մոտ 3 միլիոն մարդ։ Անգլիական բանվորներն ապրում են սոսկալի հետնաբակերում։

Անընդհատ թանկանում են կյանքի պայմանները։ Վերջին երեք տարիներին 2—2,5 անգամ բարձրացել են պարենային և արդյունաբերական ապրանքների գները։ Տարվա սկզբից յուղի գները թանկացել են 25 տոկոսով, մարգարինինը՝ 40 տոկոսով, մսինը՝ 22 տոկոսով։ 1951 թվականի միայն մարտ—օգոստոս ամիսների ընթացքում բարձրացվել են բակալեային 300 տեսակի ապրանքների գները։ Հուլիսի սկզբից կոշկեղենի գները թանկացան 30—35 տոկոսով, սպիտակեղենինը՝ 15—20 տոկոսով և այլն։ Ածուխն այժմ երեք անգամ թանկ է ծախվում, քան 1948 թվականին։

Անգլիայում մինչև այժմ էլ քարտային սիստեմ գոյություն ունի այնպիսի կարևոր սննդամթերքների համար, ինչպիսիք են՝ միսը, շաքարը, թեյը։ Քարտերով բաց թողնվող ապրանքների նորմաները չափազանց ցածր են, և ավելի ու ավելի կրճատվում են։ Նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ Անգլիայում յուրաքանչյուր շնչին ընկնող մսի միջին սպառումը պակասել է 32 տոկոսով, ձկանը՝ 19 տոկոսով, յուղինը՝ 42 տոկոսով, շաքարինը՝ 22 տոկոսով և այլն։

Մինչև իսկ «Դեյլի մեյլ» ռեակցիոն թերթը հար-



կադրված է խոստովանել, որ «Մեծ Բրիտանիան ներկայումս հանդիսանում է ամենածանր հարկեր դնող երկիրը»։ Բանվորներից և ծառայողներից գանձվող ուղղակի հարկերը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ ավելացել են 7 անգամ։ Մի քանի անգամով ավելացել են նաև անուղղակի հարկերը։ Ներկայումս Անգլիայի աշխատավորների աշխատավարձի ավելի քան 50 տոկոսը կլանում են ուղղակի և անուղղակի հարկերը։

Հակառակ մասսաների աղքատացման, անգլիական մոնոպոլիստների շահույթներն անընդհատ աճում են։ Նախապատերազմյան 1938 թվականի համեմատությամբ մոնոպոլիստների շահույթներն ավելացել են մոտ 4 անգամ։ Առանձնապես մեծ, հարյուր միլիոնավոր ֆունտ ստերլինգի հասնող շահույթներ են դիզում ռազմական պատվեր կատարող ձեռնարկությունները։ Երկրի բոլոր հարստությունների 90 տոկոսը պատկանում է բնակչության մեկ տասներորդական մասին։

## ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ

Մեծ Բրիտանիան պառլամենտական միապետություն է։ Անգլիական թագավորը համարվում է պետության և ամբողջ կայսրության ղեկավարը։ Իսկ իրականում երկրի կառավարման ամբողջ գործը գտնվում է մինիստրների կաբինետի ձեռքում, որը հլու հնա-

ղանդորեն կատարում է արդի Անգլիայի իսկական տերերի՝ խոշոր կապիտալիստների կամքը։

Անգլիական պառլամենտը կազմված է երկու պալատից, այն է, վերին՝ լորդերի պալատից և ստորին՝ համայնքների պալատից։

Լորդերի պալատը չի ընտրվում։ Այդ պալատի անդամները վերին պալատի անդամ լինելու իրավունքը ձեռք են բերում ժառանգաբար, կամ նշանակվում են թագավորի կողմից։ Լորդերի պալատի անդամների թիվը անսահմանափակ է։ 1950 թվականին դրանց թիվը հասնում էր 800-ի։ Լորդերի պալատի անդամները՝ տիտղոսավոր արիստոկրատիայի, խոշոր բուրժուազիայի, բարձր հոգևորականության և չինովնիկության ներկայացուցիչներն են։ Լորդերի պալատն իրավասու է մեկ տարով հետաձգել համայնքների պալատի ոչ ֆինանսական ամեն մի օրենքի հաստատումը։

Համայնքների պալատը կազմված է 625 դեպուտատից և ընտրվում է 5 տարով։ Ձևականորեն համայնքների պալատը օրենսդիր օրգան է։ Փաստորեն նա ենթարկված է մինիստրների կաբինետին, որը կազմվում է ընտրություններում հաղթանակ տարած պարտիայի լիդերի կողմից։

Անգլիայում, ինչպես և ԱՄՆ-ում, իշխում է երկպարտիական սիստեմը։ Երկու խոշոր բուրժուական պարտիաներն էլ՝ պահպանողական և լեյբորիստա-



կան պարտիաները, իշխանության ղեկի մոտ փոխարինելով միմյանց, հավասարապես իմպերիալիստական քաղաքականություն են վարում։ Այդ պարտիաներից յուրաքանչյուրը, երբ օպոզիցիոն է դառնում, պաշտպանում է մյուս պարտիային՝ բոլոր կարևորագույն հարցերում։ Անգլիայում հակադեմոկրատական ընտրական սիստեմն այնպես է կառուցված, որ թույլ չտրվի պառլամենտում ընտրվեն բանվոր դասակարգի, աշխատավորների իսկական ներկայացուցիչները։

Պահպանողական պարտիան՝ Անգլիայի բուրժուակալվածատիրական հնագույն պարտիան է, որն առաջներում կոչվում էր «տորի»։ Իմպերիալիզմի դարաշրջանում պահպանողական պարտիան վերածվեց մոնոպոլիստական կապիտալի պարտիայի։ Թշնամի լինելով խաղաղության և դեմոկրատիայի շահերին, այդ պարտիան հանդես է գալիս երկրի ներսում բանվոր դասակարգի վրա հարձակվելու և խաղաղասեր ժողովուրդների դեմ ուղղված արտաքին քաղաքական ագրեսիան ուժեղացնելու լայն ծրագրով։

Ընկեր Ստալինը պահպանողական պարտիային անվանել է «բանվոր դասակարգի ոխերիմ թշնամի»

Ամերիկյան և ֆրանսիական իմպերիալիստների հետ միասին պահպանողականներն են եղել Սովետական Ռուսաստանի դեմ զինված ինտերվենցիայի նախաձեռնողները և հակասովետական բազմաթիվ պրովոկացիաների կազմակերպիչները։ Պահպանողական պարտիան ակտիվորեն նպաստում է Մեծ Բրիտանիայի ստրկացմանը՝ ամերիկյան իմպերիալիստների կողմից։ Ներքին քաղաքականության բնագավառում պահպանողականները պահանջում են՝ էլ ավելի կրճատել սոցիալական կարիքների համար կատարվող ծախսերը, ավելի շատ հատկացումներ անել ագրեսիվ պատերազմի նախապատրաստմանը, նվազեցնել կապիտալի վրա դրվող հարկերը, էլ ավելի իջեցնել աշխատավորների աշխատավարձը, դաժան կերպով ճնշել դեմոկրատական շարժումը երկրում։

Պահպանողական պարտիայի լիդերներն են Ու. Չերչիլը և Ա. Իդենը։ Պարտիայի անդամների թիվը հասնում է ավելի քան 1 միլիոն 200 հազարի։

Լիբերալները (անցյալում՝ «վիգիները») երկար ժամանակ եղել են Անգլիայի ազդեցիկ բուրժուական պարտիան։ Ավելի քան մի քառորդ դար է, որ այդ պարտիան համարյա կորցրել է իր նշանակությունը երկրի քաղաքական կյանքում։ Անգլիայում իշխող



երկպարտիական սիստեմի պայմաններում լիբերալների պարտիային փոխարինեց մի այլ պարտիա՝ լեյբորիստների պարտիան։

Լեյբորիստական պարտիան ստեղծվել է ավելի քան 50 տարի առաջ։ Այդ պարտիան բանվորական են անվանում այն հիման վրա, որ նրա մեջ՝ կոլեկտիվ անդամության իրավունքով մտնում են պրոֆմիությունները։ 1950 թվականի սկզբներին լեյբորիստական պարտիայի անդամների ընդհանուր թվի մեջ, որը հավասար է 5 միլիոն 600 հազարի, անհատ անդամների թիվը կազմում էր 639 հազար մարդ։

Բնութագրելով այդ պարտիայի էությունը, Վ. Ի. Լենինն ասում էր, որ դա «մինչև ուղն ու ծուծը բուրժուական պարտիա է, որովհետև նա թեպետ կազմված է բանվորներից, բայց նրան ղեկավարում են ռեակցիոներները՝ ամենավատթարագույն ռեակցիոներները, որոնք ամբողջովին բուրժուական ոգով են գործում. դա՝ բուրժուազիայի կազմակերպություն է, որը գոյություն ունի... բանվորներին սիստեմատիկաբար խաբելու համար»։

Լեյբորիստական պարտիայի պարագլուխները — Էտլին, Մորիսոնը և մյուսները — իրենց սոցիալիստներ են անվանում, բայց իրականում ոչ մի ընդհանուր բան չունեն սոցիալիզմի և աշխատավորների

շահերի հետ։ Նրանք պահպանողականների սոսկ ձախ թևն են հանդիսանում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի առաջին օրերից մինչև մեր օրերը, լեյբորիստական պարագլուխները միշտ հանդես են եկել և հանդես են գալիս որպես Սովետական պետության չարամիտ թշնամիներ, անվերջ զրպարտություններ տարածելով սովետական ժողովրդի հասցեին։ Լեյբորիստական պարագլուխները դեռ 1944 թվականին հայտարարեցին, թե անգլո-սովետական բարեկամության ընկերության անդամությունը անհամատեղելի է լեյբորիստական պարտիային պատկանելու հետ։

Անգլիական աշխատավորների շահերի իսկական պաշտպանը միայն Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան է։ **Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիան**, անգլիական բանվոր դասակարգի ավանգարդը՝ մարքսիստական-լենինյան այն պարտիան է, որը գլխավորում է անգլիական աշխատավորների պայքարը հանուն երկրի ազգային անկախության, հանուն խաղաղության և դեմոկրատիայի։ 1920 թվականից, իր ստեղծվելու պահից սկսած, կոմունիստական պարտիան վճռական պայքար է մղում բրիտանական իմպերիալիզմի հակասովետական ռեակցիոն քաղաքականության դեմ, գաղութային և



կախյալ երկրների ժողովուրդների անողոք ճնշման դեմ։ Կոմպարտիան անդուլ պայքար է մղել և շարունակ մղում է լեյբորիստական վերնախավի դավաճանական գծի դեմ, որը հանդես է գալիս «դասակարգերի համագործակցության» քարոզով։ Մասսաների մեջ կոմպարտիայի ազդեցության զգալի աճմանը նպաստեցին կոմունիստների այն կայունությունն ու քաջությունը, որ նրանք հանդես բերին 1926 թվականի ընդհանուր գործադուլի ժամանակ և 1929—1933 թվականների համաշխարհային տնտեսական ճգնաժամի տարիներին բանվոր դասակարգի շահերի համար մղած պայքարում։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ կոմպարտիան պահանջում էր ավելացնել ջանքերը՝ ֆաշիզմի շուտափույթ ջախջախման համար, և մերկացնում էր Անգլիայի կառավարող շրջանների դավաճանական քաղաքականությունը, որոնք ամերիկյան իմպերիալիստների հետ համատեղ վիժեցնում էին երկրորդ ռազմաճակատի բացումը։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կոմպարտիան պահանջեց՝ բարեկամական ամուր հարաբերություններ հաստատել ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ։ Կոմունիստական պարտիան

վճռական պայքար էր մղում և մղում է Հունաստանում, Մալայայում, Կորեայում անգլիական ինտերվենցիայի դեմ, բրիտանական իմպերիալիզմի գաղութային արյունռուշտ քաղաքականության դեմ։

1951 թվականի հունվարին կոմպարտիայի գործկոմն ընդունեց կոմունիստական պարտիայի ծրագիրը՝ «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ»։ Այս բակղզեռամբային մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որի հիմքը կազմում է Մարքսի—Էնգելսի Լենինի—Ստալինի ուսմունքը։ Կոմպարտիայի ծրագիրը արտահայտում է բրիտանական ժողովրդի ճնշող մեծամասնության իսկական շահերը։ Ծրագիրը կոչ է անում՝ պայքարել կապիտալիստական ճնշման դեմ, պահանջում է վերականգնել Մեծ Բրիտանիայի անկախությունը, որը նա կորցրել է ամերիկյան իմպերիալիզմի ոտքերի տակ իր կառավարող շրջանների սողալու հետևանքով։

Ծրագրում ընդգծվում է, որ Մեծ Բրիտանիան պետք է ազատվի բոլոր այնպիսի ռազմական դաշինքներից ու պարտավորություններից, ինչպիսին է Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ պակտը։ Ծրագիրը պահանջում է, որ Մեծ Բրիտանիան համագործակցի Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, ժողովրդական դեմոկրատիայի եվրո-



պական երկրների և բոլոր խաղաղասեր երկրների հետ։

Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղարն է Հարրի Պոլլիտը։ 1949 թվականի տվյալներով՝ կոմպարտիան իր շարքերում ունի 40 հազար անդամ։

**Պրոֆմիութենական շարժումը։** Անգլիական պրոֆմիությունները (տրեդյունիոնները) կառուցված են ոչ թե արտադրական, այլ ցեխային սկզբունքով. միևնույն ձեռնարկությունում աշխատողները տարբեր պրոֆմիությունների անդամներ են հանդիսանում, որոնց պրոֆմիությունները միավորում են պրոֆեսիայի համաձայն։ Բուրժուազիան լայնորեն օգտագործում է բանվորական շարժման մասնատվածությունը՝ նրա դեմ պայքարելու համար։ Բուրժուազիան կաշառել է բանվոր դասակարգի վերնախավին, իր գործակալությունն ստեղծել նրա շարքերում։

Գործելով հակադեմոկրատական մեթոդներով, նրանք անգլիական պրոֆմիություններում հաստատել են դիկտատորական ռեժիմ և վարում են բուրժուազիային ձեռնտու քաղաքականություն։ Այն ժամանակ, երբ Անգլիայի բանվոր դասակարգը պայքարում է իր կենսամակարդակի բարձրացման համար, խաղաղության համար, տրեդ-յունիոնների լեյբորիստա-

վճռական պայքար էր մղում և մղում է Հնդկաստանում, Մալայայում, Կորեայում անգլիական ինտերվենցիայի դեմ, բրիտանական իմպերիալիզմի գաղութային արյունոտ քաղաքականության դեմ։

1951 թվականի հունվարին կոմպարտիայի գործկոմն ընդունեց կոմունիստական պարտիայի ծրագիրը՝ «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ»։ Այս սկզբունքային մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որի հիմքը կազմում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ուսմունքը։ Կոմպարտիայի ծրագիրը արտահայտում է բրիտանական ժողովրդի ճնշող մեծամասնության իսկական շահերը։ Ծրագիրը կոչ է անում՝ պայքարել կապիտալիստական ճնշման դեմ, պահանջում է վերականգնել Մեծ Բրիտանիայի անկախությունը, որը նա կորցրել է ամերիկյան իմպերիալիզմի ոտքերի տակ իր կառավարող շրջանների սողալու հետևանքով։

Ծրագրում ընդգծվում է, որ Մեծ Բրիտանիան պետք է ազատվի բոլոր այնպիսի ռազմական դաշինքներից ու պարտավորություններից, ինչպիսին է Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ պակտը։ Ծրագիրը պահանջում է, որ Մեծ Բրիտանիան համագործակցի Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, ժողովրդական դեմոկրատիայի եվրո-



պական երկրների և բոլոր խաղաղասեր երկրների հետ։

Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղարն է Հարրի Պոլլիտը։ 1949 թվականի տվյալներով՝ կոմպարտիան իր շարքերում ունի 40 հազար անդամ։

**Պրոֆմիութենական շարժումը։** Անգլիական պրոֆմիությունները (տրեդյունիոնները) կառուցված են ոչ թե արտադրական, այլ ցեխային սկզբունքով. միևնույն ձեռնարկությունում աշխատողները տարբեր պրոֆմիությունների անդամներ են հանդիսանում, որոնց պրոֆմիությունները միավորում են պրոֆեսիայի համաձայն։ Բուրժուազիան լայնորեն օգտագործում է բանվորական շարժման մասնատվածությունը՝ նրա դեմ պայքարելու համար։ Բուրժուազիան կաշառել է բանվոր դասակարգի վերնախավին, իր գործակալությունն ստեղծել նրա շարքերում։

Գործելով հակադեմոկրատական մեթոդներով, նրանք անգլիական պրոֆմիություններում հաստատել են դիկտատորական ռեժիմ և վարում են բուրժուազիային ձեռնտու քաղաքականություն։ Այն ժամանակ, երբ Անգլիայի բանվոր դասակարգը պայքարում է իր կենսամակարդակի բարձրացման համար, խաղաղության համար, տրեդ-յունիոնների լեյբորիստա-

կան վերնախավը կապիտալիստների հետ միասին պատերազմի, թշվառության ու սովի քաղաքականություն է վարում։

Տրեդ-յունիոնների բրիտանական կոնգրեսի ռեակցիոն ղեկավարությունը ամերիկյան պրոֆմիութենական ռեակցիոներների հետ համատեղ դուրս եկան Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայից և ստեղծեցին շտրեյկբրեխերների միջազգային պառակտողական միավորումը։

Աջ լեյբորիստները վայրագորեն հալածում են կոմունիստներին և պրոֆմիություններում ղեկավար պոստեր գրավող մյուս պրոգրեսիվ գործիչներին։ Չնայած դրան, լեռնագործների, էլեկտրաարդյունաբերության բանվորների, ձուլող բանվորների և հրշեջ աշխատողների պրոֆմիություններում գլխավոր քարտուղարներ են ընտրվել կոմունիստները։ Կոմունիստները մեծ ազդեցություն ունեն նաև խոշոր արդյունաբերական կենտրոններում գոյություն ունեցող պրոֆխորհուրդներում։

Անգլիական տրեդ-յունիոնների առաջավոր անդամները համառ պայքար են մղում ռեակցիոն պարագլուխների դեմ, ընդդեմ պատերազմի քաղաքականության, հանուն խաղաղության և դեմոկրատիայի։ Տարեցտարի անգլիական ժողովրդի ավելի ու ավելի լայն մասսաներ են հանդես գալիս կառավա-



րող շրջանների հակաժողովրդական քաղաքականության դեմ, որոնք դեպի նոր պատերազմ, դեպի կատաստրոֆ են տանում Մեծ Բրիտանիան։ Անգլիայի մի շարք պրոֆմիությունների կոնֆերանսներում պահանջ առաջադրվեց՝ հրաժարվել ամերիկյան իմպերիալիզմի հանձնակատարը լինելու քաղաքականությունից, վերջ դնել սպառազինությունների մրցավազքին, բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը։ Անգլիական բանվոր դասակարգը համառ կերպով պահանջում է, որ բարեկամական հարաբերություններ հաստատվեն Սովետական Միության հետ և զարկ տրվի անգլո-սովետական առևտրին։

Անգլիայում ընդլայնվում է խաղաղության կողմնակիցների շարժումը։ Չնայած իշխանությունների հալածանքներին, գնալով ավելի է շատանում Մեծ Բրիտանիայի այն հասարակ մարդկանց թիվը, որոնք իրենց ստորագրություններն են դնում հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։ Այդ պատմական փաստաթղթի տակ արդեն իրենց ստորագրություններն են դրել մոտ 900 հազար անգլիացիներ ու անգլուհիներ։

Անգլիայի աշխատավորները ավելի ու ավելի վճռականորեն են հանդես գալիս հանուն խաղաղության, ազատության և ազգային անկախության։

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ԼԵՆԻՆ.— Երկեր: *Հատոր 30-րդ, 738 էջ, գինը 8 ռ.։*

Դ. Մ. ՖՈՒՐՄԱՆՈՎ.— Չապաև: *318 էջ, գինը 6 ռ. 80 կոպ.։*

ՇԵՔՍՊԻՐ.— Ընտիր երկեր: *Հատոր առաջին, 591 էջ, գինը 21 ռ. 70 կոպ.։*

ՋԵԿ ԼՈՆԴՈՆ.— Մարտին Իդեն: *499 էջ, գինը 12 ռ. 10 կոպ.։*

Ն. ԿՈՒՆՑԱՑԵՎ.— Հայրենական ժամանակակից ավտոմոբիլներ: *454 էջ, գինը 10 ռ. 20 կոպ.։*

Գ. Պ. ՊԵՏՐՈՍՅԱՆ.— Մետաղագիտությունը և պողպատի ու թուջի ջերմային մշակման հիմունքները: *194 էջ, գինը 3 ռ. 65 կոպ.։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 2 1952 г.

ՎՖ 01693 Պատվեր № 65 Տիրաժ 10.000

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8, 1951 Թ.